# Դահուկներով խաղալիս

ՄՈՒՍԱ ՋԱԼԻԼ

Փոքրիկ տղան խաղ է անում դահուկով.
Ջառիվայրից, նայիր, ո՜նց է սլանում.
Այդ պստլիկն իր թիզ ու կես հասակով
Գաղտնիքները խաղի լավ է հասկանում։
Ակոսները ուղիղ գծված են ահա,
Շաքարի պես ներմակափայլ ձյան վրա.
Իսկ տղայի այտիկներից շիկացած
Քրտինքի շող կաթիլներ են հոսում ցած։
Կրնկակոխ ես նրան եմ հետևում,
Որ շուտ հասնեմ, ձորը անցնեմ անվարան,
Մեկ էլ՝ թըը՛մփ, ձյունի մեջ եմ թավալվում,
Ու ծիծաղում է ինձ վրա այն տղան։





Դե, ինչ արած, ես ինքս էլ եմ քրքջում.
Մեծ տեղովս կարմրեցի նրա դեմ.
Է՛հ, սատանան տանի, ո՜նց եմ ամաչում,
Որ հասարակ այդ բանը ես չգիտեմ։
Եվ մոտեցա ամոթահար ես նորից
Տասնմեկամյա այդ ծիծաղկոտ տղային.
— Այդ ինչպե՞ս ես վար սլանում դու սարից,
Ասա, ինչու՞մն է գաղտնիքը այդ խաղի։
Ու նա հանգիստ նայելով իմ աչքերին,
Խորունկ սիրով ու քնքշանքով ասաց ինձ.
— Դիմում գրիր, պիոներ դարձիր դու, քեռի,
Այնտեղ եմ հենց ես սովորել ամեն ինչ։

*Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*

Նկ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

№ 1 1959 թ.
ՀՈՒՆՎԱՐ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# Ինչ է պատմում այս փողոցը

Հ. ՂԱԶՈՅԱՆ



Պայուսակը մեջքին կապած՝ ձեռքին խաղացնելով մի չորացած ոստ, Արամը վերադառնում էր դպրոցից:

— Սա բարդի է, սա՝ ուռենի, սա՝ փշատենի,— թվարկում էր նա, ոստի ծայրով դիպչելով գետի եզերքին շարված ծառերին:— Իսկ սա՞...

Մերկ ճյուղերը պարզած՝ կանգնած էր տերևաթափ մի ծառ: Արամը թոթվեց ուսը, նայեց շուրջը... Ոչ ոք չկար: Միայն մի անծանոթ մորաքույր, լծակն ուսին, զույգ դույլերն առած՝ գալիս էր գետափի սառն ակունքից ջուր տանելու:

Քայլերը սովորականի նման Արամին տարան դեպի փայտե կամրջակը: Բայց նա հանկարծ կանգ առավ, ետ դարձավ ու իջավ գետը: Ջուրը բարակել էր: Արամը, լարախաղացի պես թևերը տարածած, ցատկոտելով սկսեց անցնել քարերի վրայով:

Ջուրը կընկնես, կթրջվես,— ձայն տվեց անծանոթ մորաքույրը:— Բա ինչի՞ համար է կամուրջը:

Իսկ Արամն արդեն մյուս ափին էր:

— Ոչինչ, բան չի լինի:

Մորաքույրը ծիծաղեց ու հանդիմանությամբ օրորեց գլուխը:

Բոլորն էլ հենց միայն հանդիմանում են: Այ, իրենց փոքրիկ տնակն էլ երևաց՝ գյուղի եզերքին: Երևաց բակի փայտե ցանկապատը: Ուզում ես վազել, վազել քեզ համար ու հո՛պ, վրայով թռչել ցանկապատի վրայով:

— Հապա մի փորձիր... որտեղից-որտեղ տատիկը դուրս կգա ու...

— Բա դուռն ինչի՞ համար է, անզգամ տղա...

Դե արի ու բոլորին ասա, որ երկրորդ աստիճանի պիոները պետք է գետն անցնել իմանա, թռչի 105 սմ. բարձրություն, սովորի հաղթահարել արգելքները:

— Արգելքնե՞րը,— հեգնում է տատիկը:— Գործ արա, գործի մեջ արգելք չկա: Պետի ցանկապատը ջարդես:

Արամը քորեց ծոծրակը. տատիկն այդ մեկը լավ է ասում: Երկրորդ աստիճանի պիոներից հո չի՞ պահանջվում կոտրել ցանկապատը: Չէ, պիոներն ինքը պետք է ցանկապատ շինի:

Իսկ նրանց բակում ցանկապատ վաղուց կար, պիոներների աստիճանները սահմանելուց էլ առաջ: Դրա համար էլ Արամը ոչ թե նոր ցանկապատ շինեց, այլ նորոգեց ցանկապատի դուռը, որ ինքն էր կոտրել:

Բայց այդքանն էլ տատիկին դուր եկավ: «Չէ՛,— մտածեց նա ինքն իրեն,— թոռնիկս խելքի է գալիս»:

Առաջ նա տուն էր գալիս մեկ՝ վերնաշապիկը պատռած, մեկ՝ կոշիկները փոշոտ... Շատ անգամ հենց շեմքից ձայն էր տալիս.

— Տատ, կոճակս չկա:



Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Իսկ հիմա՞: Դպրոցից գալիս է թե չէ, համազգեստը մաքրում է խոզանակով, կախում պահարանում, իր ձեռքով արդուկում է վզկապը... Մեկ էլ տեսար՝ մտնում է խոհանոց.

— Ինչո՞վ օգնեմ քեզ, տատ, ճաշ եփելիս իմ կարիքը չե՞ս զգում:

Ու Արամը, հնազանդ գառնուկի պես, անում է՝ ինչ-որ տատն ասի:

Հապա առավոտները... Չի թողնում, որ իր անկողինը մայրն հարդարի:

— Էլ ի՞նչ պիոներ, որ անկողինս էլ չհավաքեմ:

«Վնաս չունի, — ինքն իրեն մտածում է տատը, — թող սովորի»:

Մի օր էլ, մտնելով խոհանոց, տատիկը զարմացավ: Արամը, համեմունքի տուփակները բացած, մեկիկ-մեկիկ ա՛նտղում էր:

— Ի՞նչ ես անում, Արամ:

— Մասուրն եմ որոնում, տատ: Դա օգտակար դեղաբույս է: Հարուստ է վիտամինով: Պիոները պետք է ճանաչի դեղաբույսերը:

— Տատի-տուփակների՞ց, որդի, դու պիտի թփի վրայից քաղեիր մասուրը:

Իհարկե: Բայց ի՞նչ անես: Հիմա ձյուն-ձմեռ է:

Փոքր քույրը՝ Ցոլիկն էլ է զարմացել: Արամն առաջվա պես քարուքանդ չի անում նրա խաղալիքները ու ոչ էլ ասում է. «Փախիր, ոտքիս տակ ես ընկնում»: Երեկ մինչև անգամ սոսնձով նորոգեց նրա պատռված գրքերը: Հետո էլ թղթից տոնածառի խաղալիքներ շինեց ու ասաց.

— Ուզո՞ւմ ես, տար մանկապարտեզ: Մեր ջոկատը մանկապարտեզի շեֆն է:

Ցոլիկը չգիտեր, թե ինչ է շեֆը, բայց խաղալիքները վերցրեց: Հետո էլ Արամը Ցոլիկին ցույց տվեց պատին փակցված մեծ նկարն ու հարցրեց.

— Դու գիտե՞ս, թե ինչ է այս նկարի անունը:

Մի քիչ մտածելուց հետո, Ցոլիկն ասաց.

— Արջուկներ...

Արջուկը՝ արջուկ, — ասաց Արամը, — բայց այդ նկարի իսկական անունն է «Առավոտը սոճիների անտառում»: Ու նկարել է Շիշկինը: Հասկացա՞ր:

— Ճիշտ չէ, — ասաց Ցոլիկը: — Ոչ ոք էլ չի նկարել: Մայրիկը խանութից է գնել:

Արամը ծիծաղեց. դե Ցոլիկը փոքրիկ է, չի հասկանում: Իսկ ինքը երկրորդ աստիճանի պիոներ է. պարտավոր է իմանալ 1—2 նկարչի մասին ու ծանոթ լինել նրա մի քանի նկարներին: Պետք է իմանա նաև երաժիշտներին ու նրանց երգերը: Ահա համերգը վերջացավ, ռադիոընդունիչը լռեց, բայց դեռ հնչում են Արամի ականջին թռչնի երգի վերջին հնչյունները: Նա պետք է իմանա, անպայման իմանա, թե ինչպես է կոչվում այդ երգը և ով է նրա հեղինակը:

Ձմռան թույլ արևը ժպտում է պատուհանից:

Արամը բացեց լուսամուտի փեղկը: Վախեցած ծիտիկները թռա՛ն-փախա՛ն, աղմկահար թափահարելով թևիկները:

Արամը բաճկոնակ հագած, դուրս եկավ գտնելու ծիտիկներին: Բայց, նա, զարմանք բան, պարսատիկը չառավ: Էլ ի՞նչ պարսատիկ, չէ՞ որ պիոները թռչունների բարեկամն է: Նա մի կտոր հաց վերցրեց ծիտիկների համար ու մանրիկ փշրելով ափի մեջ՝ դուրս եկավ:

Բարի տատիկը նրան էր նայում ակնոցների տակից, ուրախ քրթմնջալով ինքն իրեն.

— Ի՞նչ է պատահել այս տղային: Չէ, փոխվել է թոռնիկս, շատ է փոխվել:

## Ձմեռ

ԳՐ. ՋԱԼԻԿՅԱՆ

*Ձյունն է օդում խաղում թեթև,*
*Ձյունն աստղաձև ու մաքուր,*
*Եվ հողին է իջնում թև-թև,*
*Գործում նրան վերարկու:*
*Փափկանում է ճամփան այնպես,*
*Ճռճռում է ոտքի տակ,*
*Հաճելի են քայլերդ քեզ,*
*Բաբախում է սիրտդ տաք:*
*Սահնակ, չմուշկ առեք եկեք,*
*Ձյունախաղն է ձեզ կանչում,*
*Մաքուր օդում անհոգ երգեք,*
*Խաղը ցուրտ չի ճանաչում:*

Նոր տարվա հետ մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդները տոնում են և մի ուրախ տարեդարձ՝ եղբայրական Բելոռուսիայում սովետական կարգեր հաստատվելու քառասնամյակը։

1919 թվականը բելոռուս ժողովրդի համար իրոք եղավ նոր տարի, ազգային ազատագրման ու վերածննդի տարի։ Նախկին քայքայված ու հետամնաց Բելոռուսիան այսօր դարձել է խոշոր արդյունաբերական ու կուլտուրական մի ռեսպուբլիկա։ Կառուցվել են հսկա գործարաններ, էլեկտրակայաններ, բնակելի շենքեր, մանկապարտեզներ, դպրոցներ։

Մեծ թափով զարգացել է գյուղատնտեսությունը և բարելավվել ժողովրդի տնտեսական վիճակը։

Տպագրում ենք բելոռուս գրողներ Ա. Յակիմովիչի «Պստիկը» պատմվածքը, Ե. Օգնեցվեռի «Կառուցողը» բանաստեղծությունը և երեք լուսանկար՝ շապիկի չորրորդ էջում։

# ՊՍՏԻԿԸ

(Կրճատ)

ԱԼԵՍ ՅԱԿԻՄՈՎԻՉ

ՆԿ. Ա. ՊԱՊԱՅԱՆԻ

Պետրիկը իրենց ընտանիքում ամենափոքրն էր, դրա համար էլ բոլորը նրան «Պստիկ» էին ասում։ Անգամ նրանից ընդամենը երեք տարով մեծ եղբայրը՝ Ստյոպան նույնպես իրեն միշտ մեծ էր համարում, իսկ Պետրիկին՝ երեխա։ Ճիշտ է, Պետրիկը հասակով աչքի չէր ընկնում, բայց նա ժիր ու ամրակազմ տղա էր։ Իսկ հարևանները նրան «Սիդորովենց Պստիկ» էին ասում, որովհետև նրանք ունեին իրենց պստիկները։

Չի կարելի ասել, որ Պետրիկը իր այդ մականունից գոհ էր։ Ինչպես յուրաքանչյուր փոքրիկ, նա նույնպես ուզում էր մեծ լինել։

Տարիներ անցան, Պետրիկը մեծացավ, դարձավ երկրորդ դասարանցի, բայց այդ մականունը առաջվա նման նրանից անբաժան էր։ Եվ ով գիտի, թե դեռ քանի տարի նա կմնար «Պստիկ», եթե չլիներ մի պատահար։

Մի անգամ, ուշ աշնանը, պարապմունքներից հետո, իրենց խրճիթում էր հավաքվել հինգերորդ դասարանցիների պիոներական օղակը, որի ղեկավարը Ստյոպան էր։

Պետրիկը նույնպես տանն էր, այդ պատճառով նա ակամա մասնակից դարձավ հավաքույթին։

Իսկ այդ հավաքույթում շատ կարևոր հարցեր լուծվեցին։

Սկզբում Ստյոպան կարդաց թերթում տպագրված ակադեմիկոս Լիսենկոյի նամակը։ Պետրիկը կյանքում առաջին անգամն էր իմանում, թե ինչ նշանակություն ունեն խոզակաղիները, որ անօգուտ փտում են անտառներում և կեր դառնում ու միայն վայրի խոզերին...

Սակայն պարզվում է, որ այդ սովորական խոզակաղիներ շատ անհրաժեշտ է այն տեղերում, որտեղ անտառներ չկան, և կատաղի, չոր քամիները չորացնում, ավազով ծածկում են հսկայական շրջաններ։ Այդտեղ անտառապատելու համար պետք է ունենալ բազմատեսակ անտառային սերմեր։ Ամենալավ սերմերից է համարվում խոզակաղինը, որից աճած խիտ կաղնու անտառները դիմանում են ամենաուժեղ քամիներին։

Ահա թե ինչ իմացավ նա այդ հավաքույթում։

Իսկ հետո պիոներները պայմանավորվեցին, թե երբ և որտեղ պետք է հանդիպեն։

— Կաղիններ ամենից շատ պետք է լինեն Զաբոլենյան անտառում,— քանիմացի նման ասաց Ստյոպան։



— Ես էլ եմ այդպես կարծում,— հաստատեց նրա կարծիքը ալխտակամորթ, ժանգրաձեր Յուրկան։

— Այդ դեպքում հենց այնտեղ էլ կգնանք,— եռանդով ավելացրեց Վոլոդյան, որը օղակում բոլորից ճարպիկն էր։— Վաղն էլ կիրակի է։

— Լա՛վ,— համաձայնվեց օղակավարը,— միայն թե չուշանաք. ժամը իննին բոլորը այստեղ լինեն։ Հավաք կա։

Երբ տղաները գնացին, Պետրիկը սկսեց խնդրել եղբորը.

— Ես էլ գամ ձեզ հետ…

— Ո՛ւր,— ժպտաց Ստյոպան,— որ հոգնես, հետո ի՞նչ պիտի անենք։ Ճարպկե՞լ ես քեզ…

Առավոտյան Պետրիկը շատ վաղ արթնացավ։ Մայրը արդեն խոհանոցում էր։ Տեսնելով Պետրիկին, նա զարմացած ասաց.

— Այսօր կիրակի է։ Քնիր մի քիչ էլ, մինչև որ բլիթները եփվեն։

Բայց նա այլևս քնել չցանկացավ և անհամբերությամբ սպասում էր առաջին բլիթին։

— Ի՞նչ է, դու այդպես քաղցա՞ծ ես,— ծիծաղեց մայրը։

Պետրիկը ոչինչ չպատասխանեց։

Նրանից հետո վեր կացավ և Ստյոպան։ Նա էլ անմիջապես սկսեց նախաճաշել։

Շուտով բակում հավաքվեց ամբողջ օղակը։

Ստյոպան հագնվեց, վերցրեց զամբյուղը, մորն ասաց, թե ուր է գնում, դուրս եկավ։

Պետրիկը նույնպես պատրաստվում էր։

— Դո՞ւ էլ նրանց հետ ես գնում,— հարցրեց նրան մայրը։

— Այո՛,— հաստատ պատասխանեց նա,— մենք միասին ենք գնում։

— Բայց նայիր, ճաշից չուշանաս։

— Լավ,— ուրախ պատասխանեց տղան և վազելով դուրս եկավ սենյակից։

Ստյոպան նրան նկատեց այն ժամանակ, երբ արդեն բանջարանոցում էին։

— Այդ ո՞ւր,— բարկացած զամբյուղը վրա բերեց Ստյոպան։

— Ուր որ դու,— համարձակ պատասխանեց Պետրիկը։ Նա ուռեցրեց այտերը, ցույց տալով, որ ինքն այնքան էլ փոքր չի, ինչպես մտածում է եղբայրը։

Այս անգամ Ստյոպան արդեն լուրջ կերպով բարկացավ։

— Դու մեզ միայն կխանգարես։ Մենք կարևոր գործի ենք գնում։

Մյուս տղաները հաստատեցին Ստյոպայի ասածը։

Պետրիկը վիրավորանքից քիչ մնաց լաց լիներ։ «Կարևոր գործի»։ Իսկ մի՞թե ինքը զբոսնելու էր գնում։ Չէ՞ որ ինքն էլ ամեն ինչ գիտեր այդ կարևոր գործի մասին։

Դժկամորեն նա ետ դարձավ։ Հետո բակում թափառելով նա որոշեց՝ «իսկ ի՞նչ կլինի, եթե խորամանկություն անեմ և ծածուկ նրանց հետևից գնամ, բարեբախտաբար գետակից հետո սկսվում են թփերը։ Թեկուզ թփուտներում որ տեսնեն, էլ չե՞ն վռնդի»։

Նա այդպես էլ արեց։

Առաջին րոպեներին նա դեռ հույսը չէր կորցնում, որ օղակը կգտնի։ Նա սկսեց նայել չորս կողմը, ականջ դնել։

Այդպես, Պետրիկը բավական երկար կանգնեց, բայց անօգուտ։ Ո՛չ մի տեղ, ոչ ոք չէր երևում, ոչ մի ձայն չէր լսվում. միայն իր գլխի վրայով ծառերի կողմը թռչող ագռավների ձայնն էր գալիս։

# ԿԱՌՈՒՑՈՂԸ

ԷԴԻ ՕԳՆԵՑՎԵՏ

Ես այդ օրը լավ եմ հիշում.
Հագել էի՞ մի նոր խալաթ.
Նայում էին մարդիկ, ասում.
«Սովորո՞ւմ ես, երիտասա՛րդ»:
Հրճվում էին մերոնք ինձնով,
Նախանձում էր եղբայրս ինձ.
Իսկ տատիկս քրթմնջալով,
Ասում էր. «Ի՞նչ օգուտ քեզնից:
Գոնե բժիշկ դառնայիր դու,
Կբուժեիր տատիդ մեկ-մեկ»:
— Տատ, կշինեմ այնպիսի տուն,
Որ հիվանդ չես լինի երբեք:
Որքան լավ է առավոտ շուտ
Բրիգադով քայլել գվարթ.
Ճռվողում են ծիտ ու արտույտ,
Ճյուղերի մեջ կանաչազարդ:
Այնտեղ, շենքում այնքա՞ն աղյուս
Ու խեժապատ գերաններ կան.
Որքան շենքը վեր բարձրանում,
Ուրախանում ենք մենք այնքան:
Աղյուսներն եմ շարում հերթով,
Թանկ է իմ գործը ինձ համար.
Ես ուզում եմ իմ բրիգադով
Շինել դպրոց մեծ ու հարմար:
Ու կթողնեմ ես պատերում
Լուսամուտներ արևաշատ.
Գուցե փոքրիկ եմ ձեզ թվում,
Բայց զուր չեն ինձ տվել խալաթ.

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ



Նկ. Է. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ



# Գրիչ



Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

*Սոսը այնպես վարժ է կարդում.*
*Որ կարդալիս աչք չի թարթում.*
*Գիտե լողալ, պարել, խաղալ.*
*Բայց ինչ գրի՝ տառասխալ:*

*Այ քեզ վիճակ.*
*Մի գլուխ «սխալ» կամ թե*
*«միջակ»...*
*Լուրջ վիճում է տատի հետ*
*Նույնիսկ տատը կհասկանար:*

*Ինչպե՞ս գտնի տղան ելքը...*
*Մեկ էլ հանկարծ մտավ խելքը.*
*Որ իր գրիչն է մեղավոր,*
*Ի՞նչ գրիչ է՝ փայտի կտոր...*
*Հոր գրիչը ինքնահո՞ս է.*
*Որ գրանով գրի Սոսը,*
*Էլ ի՞նչ սխալ...*
*Ասածն արեց,*
*Իր հոր գրչով տանից շարեց*
*Եվ համբերեց մինչև երեկո:*
*Հայրը եկավ: Հոգնած ու գոհ*
*Հայտնեց տղան. Մի տե՛ս,*
*մի տե՛ս.*
*Տառասխալ չունեմ. գիտե՞ս:*
*Բայց գլուխն է հայրն օրորում:*
*Ուղղվեցի՞ր այս մի օրում:*
*Հազար անգամ...*
*Նույնն է էլի.*
*Ո՛չ մի հրաշք. իմ սիրելի:*
*Զարմանում է փոքրիկ տղան.*
*Ի՞նչ, թե գրչով տառասխալ է:*
*Ծիծաղում է հայրը Սոսի.*
*Չի փոխի ո՛չ մի ինքնահոս.*
*Եթե ճիշտ գրել դու չիմանաս...*
*Ուրիշ գաղտնիքներ չկան, տղա՛ս:*



Մի քանի ամիս առաջ Տաշքենդ քաղաքում տեղի ունեցավ Ասիայի և Աֆրիկայի գրողների կոնֆերանսը: Աշխարհի տարբեր երկրներից այնտեղ հավաքվել էին մոտ յոթանասունհինգ լեզվով գրող արտասահմանյան գրողներ:

Կոնֆերանսի մասնակիցները աշխարհի բոլոր գրողներին կոչ արեցին պայքարել խաղաղության համար, բոլոր ժողովուրդների ազատության ու բարեկեցության համար:

Կոնֆերանսից հետո գրողները եղան Սովետական Միության տարբեր քաղաքներում, ծանոթացան սովետական ժողովրդի կյանքին ու ստեղծագործ աշխատանքին:

Հայաստան եկան Հնդկաստանի մի խումբ գրողներ: Նրանք եղան նաև մեր հանրապետությունում և ձեզ համար, երեխաներ, թողեցին իրենց պատմվածքներն ու հեքիաթները:

Այս համարում տպագրում ենք նրանցից մի քանիսը:

# ՁՈՒԿՆ ՈՒ ԱՌՅՈՒԾԸ

*(Հնդկական ժողովրդական հեքիաթ)*

Վերապատմեց՝
ՇՈՎՂԱՆ ՍԻՆԳՀ ՋԱՈՒՀԱՆ

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Մի օր Առյուծն ու Ձուկը զրուցում էին: Ձուկը բարձրացել էր գետի երես, իսկ Առյուծը կանգնել էր ափին: Նրանք դեսից-դենից խոսում էին և վայելում պայծառ օրը:*

*Հանկարծ Ձուկը գլուխը ջուրը կոխեց և չքացավ: Առյուծն սպասեց, որ Ձուկը դուրս գա, բայց Ձուկն անհայտացել էր և այլևս չվերադարձավ: Առյուծը հեռացավ խիստ վրդովված, որ իր վաղեմի բարեկամի՝ Ձկան հետ սիրած զրույցն այդպես հանկարծ ընդհատվեց:*

*Հաջորդ օրը Առյուծը նորից գետափ գնաց, որ տեսնի Ձկանը և հարցնի նախորդ օրվա անսպասելի փախուստի պատճառը: Ձուկն էլ նրան էր սպասում. ուստի, երբ Առյուծը գետափին մոտեցավ, մռայլ հարցրեց.*

*— Ձո՛ւկ, ասա ինձ, երեկ ինչո՞ւ այդպես հանկարծակի անհայտացար: Ես այդպիսի վերաբերմունք չէի սպասում իմ բարեկամներից:*

*— Ների՛ր, բարեկամ, — ասաց Ձուկը, — դու ճիշտ Առյուծն ես, ջունգլիների թագավորը և շատ ճարպիկ ես, բայց շատ ավելի ճարպիկ և ուժեղ մեկը կա, նրան ասում են մարդ: Երեկ, երբ քեզ հետ զրուցում էի, տեսա, որ ցանկապատի այն կողմով մի մարդ է քայլում: Ես սարսափեցի և առանց սպասելու, որ արտաբերեմ մի խոսք անգամ, ծակից-ծակ փախա: Հերիք է տեսներ մեզ, մեր երկուսի գլխին փորձանք կբերեր: Այո, մարդ սաստիկ շատ խորամանկ է և ուժեղ:*

*Առյուծը սովոր չէր ուրիշների մասին գովեստ լսել: Նա բարկացավ և ամբողջ ուժով մռնչաց: Անտառն սկսեց դղրդալ և ահարկու մի ժխոր տիրեց չորս կողմը:*

*— Ուրեմն դու կարծում ես՝ մարդն ինձնից ճարպիկ և ուժեղ է, հա՞, — գոռաց Առյուծը Ձկան վրա: — Իմ մրցակիցն է, հա՞: Դու սխալվում ես, Ձկնի՛կ: Իսկի չեմ տեսել մարդուն, բայց նա ինձնից ճարպիկ և ուժեղ լինել չի կարող: Բայց քանի որ դու քո կարծիքին ես, ահա ես գնում եմ մարդուն փնտրելու: Եվ եթե պատահեմ նրան, վստահ եղիր, մի ակնթարթում կպատռեմ:*

*Եվ Առյուծն իսկույն ճանապարհ ընկավ, որ գտնի մարդուն:*





Օրերով թափառեց նա մեծ անտառում, բայց ոչ մի մարդու չպատահեց: Մի օր էլ տեսավ՝ ուրվականի պես մի արարած անտառից դուրս է գալիս, ձեռնափայտի օգնությամբ հազիվ քարշ գալով: Սպիտակ, արծաթափայլ մորուքը ծփում էր կրծքի վրա: Չոր մի ոստյունով Առյուծը տնկվեց այս ուրվականի առաջ:

— Ասա ինձ, դու մա՞րդ ես,— մռնչաց Առյուծը:

Սպիտակ մորուքով ուրվականը կանգ առավ և իր խորաթափանց աչքերով նայեց Առյուծին:

— Ա՜, դու մա՞րդ ես փնտրում,— հարցրեց նա ժպտալով: — Մի հիսուն տարի առաջ մարդ էի, բայց ինչ արած, հիմա այլևս մարդ չեմ: Ծերացել եմ:

Առյուծը հիասթափվեց և դարձյալ ճանապարհ ընկավ: Հաջորդ օրը տեսավ, մի փոքրիկ արարած իր դեմն է գալիս ցատկելով ու ոստոստելով, երգելով ու սուլելով: Առյուծը մոտեցավ պայծառ, ճստիկ արարածին, որ հագել էր վառ գույնի շորեր, ասես տիկնիկ լիներ:

— Դու մա՞րդ ես,— գոռաց նա:

Պայծառ, ճստիկ արարածը մի պահ հանկարծակիի եկավ, ապա վերագտավ իր զվարթությունը:

— Ո՛չ, դեռ մարդ չեմ,— պատասխանեց նա բարձր, ճչեղ ձայնով: — Ես երեխա եմ: Մի քանի տարի կքաշի, մինչև մեծանամ, մարդ դառնամ:

Առյուծը դարձյալ հիասթափվեց և երեխային մենակ թողնելով շարունակեց ճանապարհը: Հաջորդ օրը տեսավ մի ջլապինդ զինվորի, որ իր կողմն էր գալիս: Զինվորն ուսին հրացան ուներ, իսկ մեջքին սուր էր կապել: Նա քայլում էր ինքնավստահ: Առյուծը կանգնեցրեց նրան ու հարցրեց.

— Դու մա՞րդ ես:

Զինվորը քմծիծաղով նայեց Առյուծին:

— Դու մա՞րդ ես,— դարձյալ մռնչաց Առյուծը:

— Այո՛, իհարկե: Հապա դու ի՞նչ կարծեցիր: Ես մարդ եմ, դու այդ հասկանո՞ւմ ես, պարոն Առյուծ. էլ ոչ մի ուրիշ հիմար հարց մի տա ինձ: Ես շտապում եմ:

— Եթե դու մարդ ես, դե, պատրաստվիր: Հիմա կըզկտեմ ու կուտեմ քեզ:

— Օ՜, դու ուզում ես ուտե՞լ ինձ: Հաճույքով, պարոն Առյուծ. ես քո տրամադրության տակ եմ: Իսկ ինչ հարկ կա, որ ուտելու համար ինձ բզկտելու նեղությունը քաշես: Բաց երախդ, պարոն Առյուծ, որ մեջը ցատկեմ, և դու մի պատառով կըլափես ինձ:

Զինվորի խորհուրդը Առյուծին դուր եկավ: Ինչքան կարող էր լայն բացեց երախը, զինվորը հրացանով նշան բռնեց Առյուծի երախի մեծ խոռոչին և իրար ետևից երկու անգամ կրակեց: Ապա կայծակի պես արագ քաշեց սուրը և կտրեց Առյուծի դունչն ու ականջները: Առյուծը հազիվ-հազ փախավ այդտեղից: Դունչն ամբողջ արյունլվա էր և ինչ-որ բան վառում էր կոկորդը: Նա վազեց վազեց, մինչև որ հասավ գետափ, որտեղ ապրում էր Ձուկը, նրա իմաստուն բարեկամը: Տանջալից ձայնով կանչեց Ձուկ բարեկամին, որն իսկույն ջրի երես ելավ ու հարցրեց.

— Սիրելի բարեկամս, իսկապես տեսա՞ր մարդուն:

— Ինչ ես կարծում, էլ ո՞ւմ կարող եմ տեսած լինել: Իսկապես, որ մարդն ինձնից ճարպիկ և ուժեղ է: Չե՞ս տեսնում, նա վառեց կոկորդս և կտրեց-թափեց դունչս ու ականջներս: Ո՛չ, ես չեմ կարող նրա հետ չափվել: Ես պետք է այն գլխից հետևեի քո խորհրդին, իսկ հիմա այլևս ուշ է:— Եվ վերքերը լիզելով՝ Առյուծը սուսուփուս հեռացավ:

Անգլերենից թարգմ.
ՀՐԱՉ ԲՈՒՋԻԿԱՆՅԱՆ

# Թե ինչպես Մոհանը գող բռնեց

ՀԱՐՋԱՐԱՆ ՍԻՆԳՀ

Մոհանը և Միրզան ավարտեցին իրենց տնային աշխատանքները և սկսեցին խաղալ։ Մոհանը մի գնդակ վերցրեց և նետեց Միրզայի դեմքին։ Աղջիկը նույն ձևով պատասխանեց։ Մոհանը քաշեց նրա մազերից։ Աղջիկը բարձրաձայն լաց եղավ։ Մայրը վազելով եկավ և ապտակեց Մոհանի վզին։ Տղան գոռաց, իսկ Միրզան, որ բարի սիրտ ուներ, ասաց մորը.

— Մայրիկ, Մոհանը կռվել չի ուզում, նրան մի պատժիր։

Մայրը ժպտաց.

— Հիմար աղջիկ,— ասաց նա,— սկզբում աղմկում ես, նրանից նեղանում և հետո ինքդ ես փոխում խոսքդ։

— Մայրիկ,— ասաց Մոհանը,— դրանից հետո նրան ծեծելու եմ քո բացակայությամբ։

Մայրը չկարողացավ ծիծաղը պահել.

— Մոհա՛ն,— ասաց նա,— դու նրանից մեծ ես, իմ բացակայության ժամանակ դու պետք է հոգ տանես նրան։

Մոհանը ժպտաց ու ասաց.

— Մայրիկ, ավելի լավ կլինի, եթե դու շուկա գնաս և մեզ համար համեղ ուտելիքներ բերես. մենք սոված ենք։ Վերադարձիր, կտեսնես, թե ես ինչպես պահպանած կլինեմ քրոջս։

— Ես արդեն շուկա էի գնում,— պատասխանեց մայրը,— բայց գողերից զգույշ կացեք։ Այնքա՜ն շատ են նրանք այս քաղաքում։

Մոհանը պատասխանեց.

— Մայրիկ, մեր մասին ինչո՞ւ ես վատ մտածում. մենք չենք վախենում։

Մայրը վերցրեց զամբյուղը և ժպտալով հեռացավ։

Մոհանը և Միրզան սկսեցին երգել։ Մոհանը դաշնամուր նվագեց, իսկ Միրզան մի գեղեցիկ երգ երգեց։ Մոհանը ոգևորված նվագում էր։ Այնուհետև նա երգեց հայրենասիրական մի երգ։

Հանկարծ, տարօրինակ հագուստով մի մարդ զգուշությամբ մտավ իրենց տունը։ Նրա տեսքից Միրզան վախեցավ, բայց Մոհանը պահեց իր սառնասրտությունը։ Նա շարունակեց երգել, կարծես մարդուն տեսած չլիներ։



Անծանոթը մտավ նրանց առանձնասենյակը։ Մոհանը անմիջապես տեղից վեր թռավ և դրսից կողպեց դուռը։ Նա ասաց Միրզային.



— Շարունակիր երգել, մի՛ վախեցիր, թող այդ մարդը բացի մեր ճամպրուկները և հիանա մեր գեղեցիկ հագուստներով ու զարդեղեններով։

Նրանք շարունակեցին երգել և, հետո մայրը վերադարձավ։ Միրզան վազեց նրան ընդառաջ, բայց Մոհանը կանգնեցրեց նրան.

— Միրզա, լուռ մնա,— ասաց նա,— թող ես ասեմ։ Մայրի՛կ,— դարձավ նա մորը,— քո շուկա գնալուց հետո եկավ մորեղբայրը։

— Որտե՞ղ է, ասացեք, ես նրան վաղուց չեմ տեսել,— անհամբերությամբ ասաց մայրը։

— Մայրի՛կ, նախ ոստիկանատուն զանգահարիր և հետո միայն կտեսնես եղբորդ,— ասաց Մոհանը,— նա վերջերս վատ սովորություններ է ձեռք բերել։

Մայրիկը խելացի կին էր։ Նա հասկացավ Մոհանի արածը և զանգ տվեց ոստիկանատուն։

Ոստիկանության քննիչն ու երկու զինված ոստիկաններ անմիջապես հայտնվեցին։

Մոհանը քննիչին տարավ դռան մոտ և ասաց.

— Դուռը բաց արա և ներսի գողը բռնիր։

Ոստիկանները զենքերը պատրաստ պահեցին, իսկ քննիչը դուռը բացեց։ Գողը ձեռքերը իրար միացրեց և խնդրեց, որ ներեն իրեն։ Քննիչը ոստիկաններին հրամայեց.

— Տարեք ոստիկանատուն։

Հետո նա բռնեց Մոհանի ուսը և ասաց մորը։

— Տիկին, դուք շատ անվախ որդի ունեք։ Իր այս համարձակ արարքի համար նա շուտով կարժանանա մեդալի։

Նա սեղմեց մայրիկի ձեռքը և հեռացավ։

Մայրը գրկեց և համբուրեց Մոհանին։

# ԳԻՐՔԸ





ԴԱՎԻԹ ՆԻԿՈՂՈՍՅԱՆ

*(12 տարեկան)*

Քո գիրքը այդքան հին ու քրքրված,
Մի անպետք բա՞ն է գուցե քեզ թվում,
Բայց գիտե՞ս արդյոք ինչեր կան պահված,
Ինչքան խորհուրդներ քո մաշված գրքում։
Դու գրքով ծովի հատակը կիջնես,
Կթռչես անվախ դեպի Մարս, Լուսին,
Աշխարհից—աշխարհ անկանգ կշրջես
Եվ դու գալիքը կտեսնես նույնիսկ,
Գրքով անցյալը քո դեմ կտեսնես,
Կիմանաս՝ ո՞վ էր Մագելլանն արի,
Ինչո՞ւ է ժայթքում հրաբուխը կեզ
Ու վերափոխում տեսքը աշխարհի...
Թեև քո գիրքը քրքրված է, հին,
Բայց կարող է տալ քեզ լավ խրատներ,
Ի՞նչ են նրա դեմ արծաթն ու ոսկին,
Քո մաշված գիրքը գին չունի, ընկեր





Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

# Ապագայում, ես գիտեմ...

ԱՇՈՏ ՇԱՅԲՈՆ

Ապագայում գիտեմ, որ՝
Տիեզերագնաց թե լինեմ,
Լուսնի վրա հեռավոր
Ես էլ ոտքս կդնեմ։
Եվ երբ Լուսին հասնեմ ես,
Գիտեմ, թեթև թևելով,
Հեքիաթային թռչնի պես
Անվախ կանգնեմ վիհերով։
Այնտեղ ոչ օդ, ոչ աղմուկ,
Ոչ քամի կա, ոչ անձրև՝
Սառնամանիք է, տաղտուկ,
Եվ շիկացնող բարկ արև։
Եվ թե երկնին նայեմ ես,
Չեմ զարմանա, երբ վերից
Մեր երկիրն էլ լուսնի պես
Ժպտա խորունկ անհունից։

Պայծառ, պայծառ ցերեկին
Աստղերը վառ ու խոշոր,
Ինձ կժպտան ցնծագին,
Երկնից մթին ու խոժոռ։
Մոտ է, մոտ է օրը այն,
Երբ մեր երկիրը թողած,
Մարդիկ Լուսին կգնան
Հրթիռներով սլընթաց։
Բայց ես...պետք է համբերեմ,
Դեռ մեծանամ, մարդ դառնամ,
Գիտելիքներ ձեռք բերեմ,
Հետո երկինք բարձրանամ։
Ապագայում գիտեմ, որ՝
Տիեզերագնաց թե լինեմ,
Լուսնի վրա հեռավոր
Ես անպայման կլինեմ։

# Ով գայլին բուժի, ինքը կտուժի

Ա. ԴԱՐԲՆԻ

Նկ. Ֆ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ

ՀԱՅՐ ՈԶՆԻ — հմուտ դերձակ
ՄԱՅՐ ՈԶՆԻ — ձևող
ԱՍԵՂԻԿ, ԹՈՐՈՑԻԿ, ՓՇԻԿ — նրանց ձագերը
ԿՐԻԱ — վարպետ ոզնու օգնականը
ԳԱՅԼ
ԱՂՎԵՍ
ԱՏԱՄՆԱԲՈՒՅԺ ՆԱՊԱՍՏԱԿ
ՏՈՏԻԿ, ԽՈՐՈՏԻԿ — նապաստակի ձագերը
ԳՐԱՍՏ
ԽՂՋԵՐՈՒ
ԲՈՐԵՆԻ

## ԱՌԱՋԻՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ

*Մութ քարանձավ՝ անտառի խորքում։ Վնգստալով մտնում է Գայլը, նստում է մի անկյունում և շոշափում վիրավոր գլուխը, ոտները, մեկ առ մեկ ստուգում է ժանիքները։*

ԳԱՅԼԸ.— Քիչ հանգստանամ այս քարանձավում...
Ոտ ու գլուխս ցավում են, ցավում...
Այնպես հարվածեց այդ անիրավը,
Որ մինչև հիմա չի անցնում ցավը։
Դունչն ուռել փափուկ դմակը...
Այնպես շրխկաց հովվի մահակը...
Իմ զույգ աչքերից կայծեր դուրս թռան։
Շներն էլ եկան, տվին ու առան։
Հազիվ հազ փախա, մտա անձավը։
Օֆ, շատ է տանջում ժանիքիս ցավը...

*(Դրսում ոտնաձայներ են լսվում։ Գայլը լարված ականջ է դնում։ Անսպասելի բացվում է անձավի խորքը)։*

Մի՞թե շները առել են հոտս։
Զուր եկա այստեղ։ Այ կոտրեր ոտս... *(Թաքնվում է խորշում։ Մտնում են Աղվեսն ու Բորենին։ Աղվեսը, կտրած պոչը ձեռքին, թախծոտ ձայնով պատմում է իր գլխի անցածը։ Բորենին լսում է նրան, միաժամանակ շոշափում իր վերքերը)։*

ԱՂՎԵՍ.— Ամբողջ գիշերը մնացի անքուն։
Առավոտյան դեմ մտա հավաբուն...
Ի՜նչ հավեր կային, չաղլիկ ու կլոր,
Իսկ նրանց կողքին՝ մի ոսկե աքլոր։
Լուսնի լույսի տակ ո՜նց էր շողշողում։
Մտիկ եմ անում ու սիրտս է դողում։
Նայում եմ շուրջս, ոչ մարդ կա, ոչ շուն։
Թաթս տանում եմ, աքլորին քաշում...
Հանկարծ նա ճչաց ու թևին տվեց...
Եվ այս ամենը մի վայրկյան տևեց...
Մի խումբ մանուկներ ինձ օղակեցին։
Երբ ծլկում էի, պոչս պոկեցին...
Եվ ահա, եղբայր, պոչատ մնացի։
Հետո միտք արի ու գյուղ գնացի...
Ահից կուչ գալով նույն բակը մտա։
Ու բախտի բերմամբ իմ պոչը գտա։
Բայց ոչ մի դերձակ պոչս չի կցում։
Ում ցույց եմ տալիս, մի կողմ է գցում։

ԲՈՐԵՆԻ.— Ինձ էլ զգզեց որսորդի թազին։
Վերքերս խոր են, շնչում եմ հազիվ։
Օֆ, չեմ դիմանա այս ծանր ցավին,
Սովին, ծարավին։
Գնամ, ջուր խմեմ՝ սիրտս հովանա...

ԱՂՎԵՍ.— Շատ մի մտածի, շուտ կլավանաս։

ԲՈՐԵՆԻ.— Ոչ ոք չի ուզում վերքիս դեղ դնել։
Մի քանի օր է չեմ կարող քնել։
*(Բորենին հեռանում է կաղալով)։*

ԱՂՎԵՍ.— *(Երկար պոչին նայած ողբում է։ Մեկ երգում է, մեկ՝ հեկեկում)։*
Գնացի որսի, պոչից զրկվեցի։
Մահվան ճիրանից հազիվ փրկվեցի։
Իմ պոչի պես պոչ աշխարհում չկար,
Բոլոր պոչերից սիրուն էր, երկար։
Ո՞ւմ դուռը ծեծեմ, որ պոչս կարի,
Ցավս հասկանա, խնդիրս կատարի...

ԳԱՅԼ.— *(Դուրս է գալիս իր թաքստոցից, կշտամբում է աղվեսին)։*
Թող պոչիդ գովքը. իմ ցավից խոսիր...
Շունչս փչում եմ, օգնության հասիր...

ԱՂՎԵՍ։ (Անակնկալից զարմացած)։
Ա՜խ, դու այստե՞ղ ես, սիրելի քավոր։
Ոչինչ չեմ տեսնում, մութ է, ահավոր։
Նեղություն քաշիր, մոտեցիր լույսին...
Այս ի՞նչ եմ տեսնում ես քո երեսին։
Վա՜յ, չեմ հասկանում, թե այս տարիքին
Ինչ ցավ է եկել, ա՜խ, քո ժանիքին...
Քո՛նի փոխարեն թող իմը ցավեր,
Թող տարին կլոր չուտեի հավեր...

ԳԱՅԼ.—(Դժգոհ փնթփնթում է)։
Թե այսպես գնա՝ սիրտս կճաքի...
Ո՞ւր են հոտերը, գառնուկն ու մաքին։
Սովից, ծարավից, ժանիքիս ցավից
Արդեն մարել է աչքերիս լույսը։
Օգնիր ինձ, աղվես, դու ես իմ հույսը...

ԱՂՎԵՍ.—(Միտքը գալիս է գլխին, գլուխն օրորում ափսոսում)։
Դե, արի գնանք նապաստակի մոտ։
Նրա արվեստին վաղուց եմ ծանոթ։
Այնպես թեթև է շարժում ատամիկը։
Թող քո ժանիքը բուժի Ծղրիկը...
Եվ մի դանդաղի, արագ շտապիր...

ԳԱՅԼ.—Գոնե փալասով ծնոտս կապիր...

ԱՂՎԵՍ.—Անցնենք ոզնու մոտ, խնդրեմ աղաչեմ,
Վերքերդ ցույց տամ, օգնության կանչեմ։
Նա հին դերձակ է, լաթեր շատ ունի...

ԳԱՅԼ.—Բայց ինչ ես կարծում, նա մեզ կընդունի՞։

ԱՂՎԵՍ.—Անտառում չկա նրա պես դերձակ,
Բայց անիրավը շատ է համարձակ։
Ոչ ոքի առաջ գլուխ չի թեքում,
Ասեղը ձեռքին կարում է, երգում...
Դե, գնանք, քավոր։ Փորձենք, ինչ կա որ...

ԳԱՅԼ.—Աչքս չի տեսնում, որ ուղիղ քայլեմ։
Ինչ օրի հասա... Ո՞վ կասի՝ գայլ եմ...

ԱՂՎԵՍ.—Ես քեզ ուղեկից. բռնիր իմ ձեռքից...

(Գայլը և աղվեսը դուրս են գալիս բեմահարթակից։ Աղվեսը իր հետ տանում է կտրած պոչը)։

Վարագույր



## ԵՐԿՐՈՐԴ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ

*Դերձակ Ոզնու արհեստանոցը՝ զարդարված ծառի նախասրահային խոռոչում։ Ոզնին և իր ձագերը չափում ու ձևում են նապաստակների նոր մուշտակները։ Ոզնու ձագերը զբաղված են Խորոտիկի և Տոտիկի մուշտակներով։ Վարպետ Ոզնին, ակնոցը դրած, մեկ՝ աջից, մեկ՝ ձախից դիտում է նապաստակի մուշտակը և հիացած օրորում գլուխը։ Նապաստակը հայելու առաջ նայում է և քթի տակ եղանակում։ Երբեմն, գլուխը հենած հարթակին, խամփացնում է։*

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.—(Իր աշխատանքից գոհ, մեծ հիացմունքով)։
Այո, նապաստակ, սիրուն մուշտակ է և լավ է սազում։
Այս տեսակ մուշտակ կարող ես տեսնել միայն երազում։

ՆԱՊԱՍՏԱԿ.—Իրավ ես, վարպետ, կարված է չքնաղ։
Քեզ նման դերձակ չկա ոչ մի տեղ։

(Նապաստակը կրկին նայում է հայելու մեջ, ապա երախտագիտությամբ սեղմում Ոզնու ձեռքը)։

Թույլ տուր համբուրեմ քո ոսկի ձեռքը։

ՈԶՆԻ.—Ամոթ է, ամոթ, թո՛ղ այդ հին երգը։
Ես, իբրև դերձակ, պարտքս եմ կատարել։

ՆԱՊԱՍՏԱԿ.—Ոչ ոք չի կարող քեզ նման կարել։

(Խորոտիկը և Տոտիկը մոտենում են նրան, դիտում շուրջը, խաղում նրա պոչի հետ)։

ԽՈՐՈՏԻԿ.—Ինչ լավ մուշտակ է, ինչ լավ մուշտակ է։

ՏՈՏԻԿ.—Մեր վարպետ Ոզնուց լավ հիշատակ է...

ՆԱՊԱՍՏԱԿ. (Երջանկորեն փաղաքշում է ձագերին)։
Հյուր եկեք ինձ մոտ,
Ձեր ատամները սրեմ հեսանով,
Գոնե մի անգամ
Օգտակար լինեմ մի չնչին բանով։

(Խորոտիկը և Տոտիկը զույգ ու խնձոր են նվիրում ոզնու ձագերին։ Միասին ուտում են ու ծափահարում, պարում)։

ՈԶՆԻ. (Նապաստակին)։
Հյուր կգանք, եղբայր,
Կգանք անպատճառ...



ԳԱՅԼ. Ինչե՞ր ես ասում, այ դու անիրավ...
Ո՞նց են քո գալիս ծանր ձեռքերս...
Ափսոս, քո բախտից կույր են աչքերս...
Կապդ կտրել ես, խելագար դերձակ:
Դարձել ես անզգույշ, գոռոզ, սանձարձակ,
Լեզուդ կպոկեմ ողջիդ արմատից...

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.—*(Մկրատը չխչխկացնելով)*:
Դու զգուշացիր իմ մեծ մկրատից...

ԱՂՎԵՍ.—*(Թարամանելով)*:
Օտար մարդ չկա. ծառ է խոռոչում,
Զուր եք իրար դեմ դուք սրեր ձոձում:

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.— Օտարներ չկա՞ն: Բա դո՞ւ: Բա գե՞լը:

ԱՂՎԵՍ.—*(Ողնուն)*:
Մի կտրիր վարպետ, իմ մորթի թելը...
Գիտե՞ս, որ գայլը խոտ է արածում...
Եվ միս մասին չի էլ մտածում...
Հիմա մարին է նրա ընկերը,
Սարերի խոտն է մշտական կերը:

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.—Ոչ, ես դեռ չունեմ գայլերի ցավին:
Գնա հավաբուն ու խաբիր հավին...

ԱՂՎԵՍ.— *(Տոնը փոխելով)*:
Տես, գայլը մի օր կվերադառնա...

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.— Իզուր մի սպառնա... Գնա քո բանին:

ԱՍԵՂԻԿ.—Դուրս մի տանի...
ՔՈՐՈՑԻԿ.—Հիմար կենդանի...
ՓՇԻԿ.—Գրողը տանի...

*(Աղմուկի վրա կրիան գլուխը կեսով չափ հանում է միջնորմի ետևից, աչք ածում շուրջը և կրկին թաքնվում: Այդ կողմից գալիս է մայր Ոզնին՝ մկրատը ձեռքին: Այդ պահին գայլը և աղվեսը գրոհում են Ոզնիների վրա: Սկսվում է մենամարտը: Վարպետ Ոզնին վարժ ու հարպիկ ծակծկում է մեկ գայլին, մեկ աղվեսին: Մայր ոզնին մկրատով կտրում է գայլի ականջները: Ասեղիկը, Քորոցիկը և Փշիկը ասեղներով ծակծկում են գայլին ու աղվեսին: Վարպետ Ոզնին վերցնում է հարթուկը և հարթուկում գայլի մեջքը)*:



ԳԱՅԼ. *(Ամբողջ ձայնով գոռում է)*:
Վա՜յ, վա՜յ, վառվեցի...
Աղվես, ո՞ւր ես, ո՞ւր...
Վա՜յ, թաթդ ինձ տուր,
Կրակից դուրս քաշիր,
Այրվեց իմ կաշին...

*(Փոքրիկ Փշիկը հարթուկում է Աղվեսի մեջքը)*:

ԳԱՅԼ. *(Հիստերիկ ճչում է)*:
Վա՜յ, մորթիս, մորթիս...

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ. *(Փշիկին)* Այ ապրես որդիս...
Քննություն տվիր, վարպետ ես որ կաս.
Ամեն ինչ տեղն է, բան չկա պակաս...

*(Ոզնիները հալածում են գայլին ու աղվեսին, արհեստանոցից դուրս նետում: Վարպետ Ոզնին նկատում է աղվեսի պոչը: Վերցնում է տնտղում)*:

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.—Օձիքի համար սա շատ է հարմար...

*(Պոչը կախում է մեխից: Մայր ոզնին տանձ ու խնձոր է բաժանում բոլորին: Ախորժակով ուտում են և միաժամանակ աշխատում: Միջնորմի ետևից դուրս է գալիս կրիան հարթուկը ձեռքին)*:

ԿՐԻԱ.—*(Ամբողջ կոկորդով գոռում է)*:
Ո՞ւր կորավ գայլը: Բերեք հարթուկեմ,
Ինչպես որ հարկն է՝ զարդարեմ, զուգեմ...
*(Բոլորը ծիծաղում են կրիայի վրա)*:

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.— Այ ծույլ ու վախկոտ, ո՞ւր էիր փախել...

ԿՐԻԱ.—*(Հարթուկը թափահարելով)*:
Ուզում եմ գայլի գանգը ջախջախել...
Ինձ կրիա կասեն, կկռվեմ մենակ...

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.—Ո՞ւր էիր մինչ կռվի ժամանակ...
ԿՐԻԱ.— Անտեր հարթուկը հազիվ հազ գտա...
ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.— Ամեն ինչ պարզ է, զուր մի հոխորտա..
Էլ շատ ես վախկոտ: Ամոթ քեզ, ամոթ...

ԿՐԻԱ.— *(Կուրծքը ծեծելով)*:
Ինձ պես հերոսին վախկո՞տ ես կոչում:

ՓՇԻԿ.— Ամեն տեղ, Կրիա, մնում ես պոչում...
ՔՈՐՈՑԻԿ.— Ձեր էլ իմանում, թե ով է կորչում...
ԱՍԵՂԻԿ.—Ու կռվից հետո բռունցքն է ձոձում...

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ. *(Ձեռքով նշան է անում: Ձագերը լռում են և դիմացից աշխատում: Ոզնին նայում է կրիային և կշտամբում)*:
Այս ինչ արեցիր, նորից վառեցիր...
Գե ինքդ ասա՝ ո՞նց վարվեմ քեզ հետ...

ԿՐԻԱ. Շատ էի հուզված: Ներիր ինձ վարպետ *(Եվ շարունակում է ծուլորեն հարթուկել)*:

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.—*(Եվ կարում է, և երգում)*:
Հին վարպետ եմ, լավ դերձակ եմ, համարձակ եմ,
Ով խանգարի՝ ասեղով ես կծակեմ...

ՁԱԳԵՐԸ.—*(Միասին)*:
Մենք դերձակ ենք, համարձակ ենք,
Ով խանգարի՝ ասեղով մենք կծակենք...
*(Կրիան գլուխը հանել է հարթուկին ու քնել)*:

ՓՇԻԿ.—*(Ասեղով ծակելով կրիայի քիթը)*:
Ով որ ծույլ է՝
Քիթը ծակենք...

ԲՈԼՈՐԸ.—Քիթը ծակենք...

*Վարագույր*

(Շարունակելի)

# ՄՈՒԿՆ ՈՒ ԿԱՏՈՒՆ

ԱՎԵՏԻՔ ԻՍԱՀԱԿՅԱՆ

(Առակ)

(Տպագրվում է առաջին անգամ)

Կատուն օրն ամբողջ՝ քաղցած անոթի
Տան ու գավիթի
Ամեն ծակ ու ծուկ
Զգույշ ու ծածուկ
Հոտոտեց մեկ-մեկ
Ու նորից քաղցած՝ նստավ սրտաբեկ:
Եվ հանկարծ ինչպես մթի մեջ ծոփ.
Ճաճանչը ակի հուր արեգակի.
Որտեղից որ է
Լսվեց հոգեցունց անուշ ծվծվոց:
Կատուն շլշակի
Ականջը լարեց, աչքերը սրեց
Տեսավ հատակի
Անձուկ մի ճեղքից
Աչքերը մուկի:
Օ՜հ, ավաղ, սակայն, չէր հասնի նրան
Ո՛չ ճանկ, ոչ ճիրան:
— Բարև, անուշիկ մուկիկ իմ սիրուն.
Քաղցրացրին ձայնով աղաչեց կատուն.
Վաղուց է, հոգիս, չէի տեսել քեզ.
Ձայնիկդ ասա ու մոտ թռա:
Ա՜խ, այնպես, այնպես
Կարոտել եմ քեզ:
Ինչպե՞ս կուզեի պատմեի գիտես
Պայծառ, գեղապես:
Ա՜խ, սիրունիկս, ինչ ասեմ՝ կուզեմ.
Ճարպ ու ճրագու, շաքար ու բադամ,
Այդ ծակից ելիր
Այս ծակը մտիր.
Միայն մի թիզ տեղ՝ ոչինչ ավելի,
Մի վայրկյան տեսնեմ քոյդ նազելի:
— Բայց եթե նույնիսկ խեղճ ծնողներն իմ
Քո անեղ փորից հանկարծ ետ գային
Անկեղծ սրտով մեջ ինձ համոզեին.
Ես նորից փախած
Կմնամ անելքյա.
Որ քո մորթի մեջ շանորդություն կա.
Մուկն այս ասելով, ծլկեց, գնաց.
Եվ կատուն մնաց կեղծ բերանը բաց:

Նկ. Հ. ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆԻ



# ՎԵՃ

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Չէ, չեմ գնա, չեմ հեռանա.—
Շշնջում է աշունն անվերջ.—
Իմ գույները պիտի մնան
Այս անտառի, այս այգու մեջ։
Սո՛ւս, դո՛ւրս, հեռո՛ւ, քիչ խոսի, քիչ,
Փախսում է ձմեռը սառ,
Առած ճերմակ ներկ ու վրձին,
Իջնում է նա սարից անտառ.
— Այսպես լավ է, միայն մի գույն,
Միայն սառույց, սառնամանիք.
— Հերի՛ք,— հանկարծ լսվեց այգում.—
Տեր է դարձել սրան մտիկ...
Եվ գարունը այնպես գոռաց,
Արցունք դարձած ձյունը հոսեց,
Կայծակ, որոտ, անձրև տեղաց
Ու մայր հողին գոհար ցողեց.
— Է՜յ, ո՞վ ունի այսքան ծաղիկ,
Թավիշ բողբոջ, զանգակ առու.
— Լավն ես, միայն առանց բարիք
Ու՞մն ես դու պետք, խելառ գարուն.
Եվ շոգ ամռան տապից հանկարծ
Ծաղիկները ընկան գետին.
Միայն կարմիր վարդը մնաց,
Գարնան անուշ բույրը թերթին։
— Ես արևի աչքով հսկում,
Բերք եմ բերում ծառ ու ծաղկին.
— Տհա՛ս,— խայթեց աշունն իսկույն,
Գույներ առած մտավ այգին
Ու վիճում են... ի՞նչ են ուզում,
Ի՞նչ են ասում— ոչ այս, ոչ այն
Թող որ վիճեն, նրանց լեզուն
Հասկանում է մարդը միայն...

# ԵՐԲ ՄԵՐ ԳՅՈՒՂԸ ՔՆԵԼ ԷՐ

Բ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Մեր գյուղը վաղուց էր քնել։ Արթուն էր միայն գյուղի միջով սողացող գետակը, որ կլթկլթում էր սառույցի տակ, խուլ մրմնջում։ Ես լսում էի այդ ձայնը և ինձ թվում էր, թե գետակն էլ ուզում է քնել։

Գնում էի տուն։ Իսկ մեր տունը ընկած է գյուղի ծայրին, մի մացառուտի մոտ։ Այդ մացառուտից քիչ այն կողմ, իմ աչքովն ընկավ շարժվող ինչ-որ բան։ Սկզբում ինձ թվաց, թե դա մեր հարևանի շունն է՝ Բողարը։ Երբ բավականին մոտեցա, և լուսինն էլ դուրս եկավ ամպի տակից, տեսա, որ նապաստակ է։ Երևի նա եկել էր դեզից առվույտ ուտելու, բայց ճանապարհին ինչ-որ բան էր գտել և հանգիստ կրծում էր։

«Է՜յ, դու շլդիկ, հիմա ես քեզ ցույց կտամ» - մտածեցի ես ու շտապ մտա տուն՝ իմ «Տիրի» հրացանը վերցնելու։

Երբ դուրս եկա, նապաստակը նույն տեղում



շարունակում էր իր գործը: Անփորձ որսորդի պես անհաջող նշանառության վրա նշան բռնեցի: Երբ հրացանը պայթեց, նապաստակը թռավ մի կողմի վրա, սակայն չփախավ: Նա ճանկերով ետ գործում նույն տեղն ու շարունակեց կրծել: Իսկ ես միայն մի փամփուշտ էի վերցրել, մի հատիկ փամփուշտ, այն էլ նապաստակին չհասավ:

Քանի որ նապաստակը չէր փախչում, դրա համար էլ որոշեցի վերադառնալ տուն և փամփուշտներ վերցնել: Սակայն դեռ տեղից չշարժված, մոտա- կա ժայռերի ու ասֆալտների միջից իմ աչքերին ընկան երկու գույգ ճրագի պես փառվող կետեր: Դրանք մերթ երևում էին, մերթ՝ չքանում: Իսկույն հասկացա, որ այնտեղ թաքնված են երկու գայլ և հետևում են նապաստակին: Ծղրիկը չէր նկատել գայլերին: Երևի նա շատ քաղցած էր ու ճանկած պատառն էլ դուր էր գալիս իրեն: Բայց հանկարծ նա թողեց կրծելը, գլուխը անկած նայեց շուրջը: «Ա՜յ, հիմա պոկ կգա, հա՛»:

Բայց ես սխալվում էի: Նապաստակը միայն ընտացում էր զգացել, որ իրեն վտանգ է սպառնում, բայց դեռ չէր նկատել գայլերին, որոնք թփուտներից հետապնդում էին նրան: Գայլերը ինչ-որ շարժում գործեցին, շրջեցին շատ երկար, նայեց ու տեսավ նրանց: Ինձ թվաց, թե այդ պահին գլուխն էլ որ զցեր, չի ճանկի խոտից, այնքան արագ պետք է փախչեր նա: Բայց նապաստակը մի պահ միայն քարացավ տեղում, ապա ոստնեց տեղից և փոխանակ նախասահ կողմը փախչելու, սլացավ ուղիղ դեպի գայլերը, որոնք խուճապահար հանկարծակիի եկան նրանից և անհետացան սարի ետևը:

* * *

Երբ առավոտյան ամեն ինչ պատմեցի եղբորս որդուն՝ Թոփիկին, որ սովորում է վեցերորդ դասարանում, նա զարմացած վեր թռավ աթոռից, տարակուսած դիմեց ինձ.

— Չե՛մ հավատում: Մի՞թե նապաստակն այդքան հիմար է, որ իր ոտքով գնա դառնա գայլերին կեր:

Բայց դե ի՞նչ կարող էի անել, այսպես էի տեսել:




## «ԵՐԿՐԻ ՇՈՒՐՋԸ «ԿՈՐՇՈՒՆ» ՆԱՎՈՎ»

Երևի ձեզանից շատերն են վերցրել ծովային խեցին, դրել ականջներին և հիացել նրա միջից լսվող խուլ վշշոցով, որ հիշեցնում է հեռավոր ծովի ալիքների ձայնը: Դուք տարվել եք այդ վշշոցով ու երազել ծովի և ծովով հեռավոր նավարկություն կատարելու մասին:

Ահա, խաղաղ է ծովը, պայծառ արեգակի ճառագայթները խաղում են ալիքների հետ, շողշողում հազար գույնով: «Կորշուն» նավն առագաստները բացած, թեթև սահում է ջրերի վրայով և առաջին անգամ նավարկողին թվում է, թե ամեն ինչ այդ օրվա պես հաճելի ու հանգիստ է լինում ծովի վրա:




Իսկ այդ նավով առաջին անգամ հեռավոր ծովային նավարկության էր դուրս եկել մի երիտասարդ ծովային սպա, որը հետագայում դարձավ «Երկրի շուրջը «Կորշուն» նավով» գրքի հեղինակը:

Նա նոր էր ավարտել զիմնազիան և [illegible] հեռավոր նավարկության գնալու՝ առանձնապես գոհ չէր: Նրա համար դժվար էր կտրվել ընկերներից և ընտանիքից: Սակայն պայծառ եղանակն ու նավակազմի հրաշալի ընկերները ցրեցին նրա թախիծը: Նա հիանում էր արևի տակ շողացող ծովի երանգներով:

Մի օր էլ, երբ «Կորշունը» մտնում էր Գերմանական ծովը, արևը թաքնվեց ամպերի հետևում, երկինքը կամաց-կամաց սկսեց մթնել, թեթև զեփյուռը փոխվեց քամու, քամին էլ սաստկացավ: Ալիքներն սկսեցին խոշորանալ, նավն սկսեց թեթև ճոճվել: Քամին ավելի սաստկացավ, վերածվեց մրրիկի. ալիքները ծառս եղան փրփրաբաշ ձիերի նման, և փոթորիկն սկսվեց: «Կորշունը» թեթև տաշեղի նման պարում էր ալիք-

ների վրա. մեկ բարձրանում էր. մեկ էլ բափով ցած իջնում:

Սակայն, ինչ էլ որ լինի, ոչ մի փոթորիկ չի կարող սասանել իր տեղից հսկայական այն երիտասարդ միչմանին, որ կանգնած է նավի քթամասում և առաջ է նայում՝ ստուգելու համար նավի ճանապարհը: Ալիքները ողողում են նրան, սպառնում գլորել տախտակամածից, բայց նա կանգնած է ամուր. նրան մարդկանց բախտն է վստահված, նա պարտավոր է առաջ նայել, կատարել իր պարտականությունը:

Եվ այսպես «Կորշունը» մաքառելով ալիքների դեմ, դժվարությամբ առաջ էր ընթանում, մեկ էլ հանկարծ երիտասարդ միչմանը իր դիմաց դրոշակներ պարզած մի նավ նկատեց: Այդ նավը կիսով չափ սուզված էր ջրի մեջ. միայն առագաստներն էին մնացել ջրի երեսին: Առագաստների վրա թրջված ու սառած կառչել էր նավի անձնակազմը: Նրանք երկրորդ օրն էր պատահական նավերի օգնությանն էին սպասում: Նրանցից մի քանիսը, որոնք ավելի թուլակազմ էին, չէին դիմացել քաղցին ու ծարավին, կուլ էին գնացել դաժան փոթորկին: Մյուսները հուսահատված, վերջին ուժերն էին գործ դնում պարաններին կառչած մնալու համար, երբ երևաց «Կորշունը»: Երիտասարդ միչմանը իր բանբերին շտապ ուղարկեց կապիտանի մոտ՝ տեղեկացնելու խորտակվող նավի մասին: Կապիտանն անմիջապես հայտնվեց տախտակամածի վրա:

Բայց ես չե՛մ կարող պատմել ձեզ ամբողջ ճանապարհորդության մասին, որ լի է շատ հետաքրքիր դիպվածներով: Ավելի լավ կլինի, երե դուք ինքներդ կարդաք Ստանյուկովիչի «Երկրի շուրջը «Կորշուն» նավով» գիրքը:

*Ա. ԴԱՆԻԵԼՅԱՆ*

## «ՀԱՅՐԵՆԻ ԼԵԳԵՆԴՆԵՐ»

«Մոխրագույն, փոքրիկ կատարով և կարմրագույն կրծքով այս թռչունը, որ վշտից մրագնած աչիկներ ունի, միշտ այցելում է արածող գառներին ու ոչխարներին, անհանգիստ ոստոստում նրանց շուրջը և տխուր-տխուր ծլվլում:

Այս փոքրիկ թռչունին հովիվները տվել են տարօրինակ մի անուն՝ «Գառնարած»:

Հուզիչ է «Գառնարածի» պատմությունը:

Իրոք շատ հուզիչ է, երբ ծանոթանում ես:

Ծուռ Սեփոյի տղայի՝ Ազիզի տխուր պատմությունն է դա, մի փոքրիկ գառնարածի, որ Սմբատ սեպուհի գառներն էր արածեցնում: Սեպուհն այնքան չար էր, այնքան էր չարչարում Ազիզին, որ նա չդիմացավ... Իսկ թե ի՞նչ եղավ հետո, ավելի լավ է ինքներդ կարդաք և իմանաք...

Ստեփան Կուրտիկյանը՝ այս գործի հեղինակը, մի գիրք է գրել, որ կոչվում է «Հայրենի լեգենդներ»:

Այստեղ նա պատմում է այն հերոսությունների մասին, որ կատարել է ժողովուրդը: Նա իր




կուրծքը դեմ է տվել թշնամուն, երբեք ծնկի չի իջել: Նա կռվել է ոչ միայն արտաքին, այլև ներքին թշնամիների դեմ: Մի՞թե այդպիսի մի թշնամի չէր Սմբատ սեպուհը, որը օր ու արև չէր տալիս խեղճ ու անօգնական Ազիզին: Բայց միայն Ազիզի՞ն: Ամբողջ աշխատավոր ժողովուրդն էր տերերի գերին: Այդ մասին լավ է պատմում «Սատանի վերջը» ավանդությունը:

Կուրտիկյանը լավ էլ սկսում է, պարզ, անմիջական, կարծես թե ինքը ժողովուրդն է պատմում. «Աշնան հետ եկավ հնձի ժամանակը: Շինականները կալսեցին հացահատիկը, բայց դեռ տուն չփոխադրած մոլեգնեց էլի սատանի քամին, ցորենի մեծ կորուստ եղավ և սովը նորից նստեց գյուղական օջախներում»:

Մարդիկ միշտ էլ դառն ու դատարկ են նստում: Վերջապես գաղտնիքը պարզվում է, նրանց սովի ու դառնության մատնողը ապարանքն էր, երբ ոչնչացնեին այն, այսինքն՝ տերերի որջը, նրանց կյանքը կլավանար: Այդպես էլ անում են նրանք, կռվում են իրենց ազատության համար և ապրում երջանիկ:

Ուրիշ շատ բաների մասին էլ են պատմում «Հայրենի լեգենդները»: Ո՞վ չի հիշում հայրենանվեր վարպետներին, որոնք կառուցել են ջրանցքներ, դղյակներ, շենքեր: Դրանք ժողովրդի ծոցից են ծնվել և նրա համար աշխատել: Իսկ գյուղացիները, որ քրտինքը ճակատին անդադար ցանել են ու հնձել, երբեք, երբե՛ք չեն հագել, ծուլացել: Ծույլերը տերերն են: Ինչքա՞ն լավ է, երբ հոգնած ու դադրած աշխատավորը՝ Օշինը տուն դառնալով դիմում է մորը.

«— Մայր, այսօր ո՞վ է աշխատել:

Ո՜վ... ես ու դու, լաճո... Ձայնն էլ տունն է պահել, այծերին ու ձավերին տեր եղել:

— Դե, մայր, նստենք ես ու դու էլ ճաշենք: Ձայնի բաժինն էլ չմոռանանք...

Իսկ իրենց իշխանուհի հարսին ոչինչ չեն տալիս, որովհետև նա չէր աշխատել:

Բայց ամեն օր այդպես չէր կարող շարունակվել: Վերջապես ծույլ հարսն սկսում է աշխատել...

Այս գիրքը պատմում է անձնազոհության և խիզախ արարքների մասին, շատ բան է տալիս հայրենի երկիրը ճանաչել ցանկացողներին: Օրինակ, շատերը չգիտեն, թե որտեղից է առաջացել Դիլիջան, Արզնի, Տաթև, Գեղամա ծով և այլ տեղանունները: Այնինչ ժողովուրդը դրանցից ամեն մեկի հետ մի ավանդություն է կապում:

Գրքի մի մասն էլ Հայրենական Մեծ պատերազմի հերոսական գործերի մասին է պատմում:

Այս բոլոր գործերն էլ գրված են գրավիչ ու պատկերավոր: Ժողովրդական բանահյուսությունը օգնել է հեղինակին ստեղծելու «Կապուտակին», «Աղջկա կամուրջ», «Դալի ջան», «Հայրենի հողը», «Բազուկն ու բուրը», «Կռունկների դրոշները» և էլի ուրիշ լեգենդներ:

Հայրենասիրություն, հերոսություն, ազատություն և անձնվիրություն, ժողովրդին կյանքը նվիրելու ձգտումներ. ահա թե ինչ կսովորի գիրքը կարդացողը:



# ԵՂՋԵՐՈՒՆ ՈՒ ՈՒՌԵՆԻՆ

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

*Հետզհետե ավելի խոր թախիծով էին լցվում մայր եղնիկի մեծ-մեծ աչքերը, և տխրության հետ երկյուղ էին արտահայտում:*

*Հեռվից փարթամ գետակի մոտ անշարժ կանգնած եղնիկը թառանչում էր: Այնպես էր թառանչում, ասես սրտից խոցված լիներ:*

*Բա՜յց...*

*Տեղատարափ այդ անձրևին տարօրդի ոչ մի գետակ չէր արձագանքել, չէր նվագել անտառում:*

*Գեղանինյա ուռենին դիտում էր մայր եղնիկին.*

*— Ասա ինձ, սիրու՛ն եղնիկ, ինչու՞ ես այդպես տխուր, և ինչու՞ են թացանում աչքերդ:*

*Մայր եղնիկը վշտահար նայեց թխպոտ երկնքին և նորից թառանչեց.*

*— Պատմի՛ր ինձ քո վիշտը, անմե՜ղ եղնիկ, պատմի՛ր, սիրելի՜ս... ճիշտ է, ես կոշտ բնով, անպտուղ մի ծառ եմ, բայց ինձ տանջում է քո ցավը, ասա, թերևս ես ճար անեմ, ճար անեմ, ցավդ դարմանեմ... — կարեկից շշնջում էր ուռենին:*

*Դողդողում էին նրա կանաչ տերևները, որոնց վրայից տակավին կաթկթում էին անձրևի մարգարիտները:*

*Ուռենու թախանձանքին տեղի տվեց վշտահար եղնիկը:*

*— Ուռենի քույրի՛կ, — հառաչեց նա, — ձագուկներս թողել եմ գետի էն ափին՝ անտառում և ինքս եկել եմ հանդից, որ սնունդ տանեմ ու նրանց էլ սնեմ. և ահա չար տեղատարափը եկավ, հեղեղ սկսվեց, ու այժմ չեմ կարող փարթամ գետի մյուս ափն անցնել: Հիմա սոված — ծարավ ինչ են անում խեղճ ձագուկներս...*

*Ու արցունքի կաթիլները կախվեցին մայր եղնիկի խոնավ աչքերից...*

*Արմատից ցնցվեց ուռենին, տերևները ցնցուղեցին արցունքի վճիտ կաթիլներ: Հետո նստաց ծառը և արևին պարզած ճյուղերը խոնարհեց նորից, կռացավ, կամուրջ կապեց փարթամ գետակի վրա: Մայր եղնիկը ոստնեց — անցավ նրա վրայով և ուրախ մայրական սլացավ ձագուկների մոտ...*

*Երբ նա հասավ ձագուկներին, թուխպը պատռվեց և երկնակամարում ծիածան կապվեց:*

*Ձագուկներին սնելուց հետո, մայր եղնիկը վերադարձավ ուռենու մոտ, որ գլուխը թեք՝ լաց էր լինում, ասես, ուզեց օգնել, որ ճյուղերը նորից դեպի արև ձգվեն: Բայց ուռենին ասաց.*

*— Այսպես էլ լավ է՝ հողին ու ջրին թեքված, սիրելի քույրիկ:*

*Այդ օրվանից գեղանինյա ուռենիները թեքված մնացին ջրերի վրա...*



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ ՆԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված հոկտեմբերիկների համար




Խաղի սկզբում ՅՃՆ. ամրոցը պաշտպանում էր քառասուն հոգի։ «Կայազորի» պետը, որ այդ օրը Երկար Մակարն էր, ուժերը դասավորել էր հետևյալ կերպ։

1 9 1
9 9
1 9 1

«Հակառակորդը» կազմակերպեց հինգ գրոհ, բայց «կայազորը» անձնատուր չեղավ և հերոսաբար պաշտպանում էր ամրոցը։ Խաղի պայմանների համաձայն առաջին, երկրորդ, երրորդ և չորրորդ գրոհների ժամանակ ամեն անգամ «կայազորը» կորցրեց 4-ական «զինվոր», իսկ վերջին, հինգերորդ գրոհի ժամանակ «հակառակորդը» ձնագնդիկներով շարքից հանեց ևս 2 «զինվորի»։

Չնայած այդ կորուստներին, «հակառակորդը» յուրաքանչյուր գրոհից հետո տեսնում էր, որ ամրոցի ամեն մի կողմը դարձյալ պաշտպանում են 11-ական զինվոր, ինչպես եղել էր խաղի սկզբում։

Կարո՞ղ եք գտնել, թե Երկար Մակարը յուրաքանչյուր գրոհից հետո ինչպե՞ս էր վերադասավորում իր ուժերը։

## ԿԱՐՄԻՐ ԳՈՒՅՆԸ

Մի անգամ Մակարն ու Խոսրիկը գնացքով գնում էին Մակարի մորաքրոջ տուն։ Հոկտեմբերյան չհասած՝ շոգեքարշն սկսեց սուլել։

— Մոտենում ենք կայարանին, դրա համար է սուլում,— իր կարծիքը հայտնեց Խոսրիկը։

— Բայց կայարան չհասած՝ գնացքը կանգ առավ։

Խոսրիկն ու Մակարը վագոնի լուսամուտից գլուխները դուրս հանեցին։ Խոսրիկը նկատեց լուսաֆորի կարմիր լույսը և ասաց.

— Ճանապարհը փակ է. կայարանը չի կարող մեզ ընդունել։

— Որտեղի՞ց իմացար այդ բոլորը,— հարցրեց Մակարը։

— Չե՞ս տեսնում լուսաֆորի կարմիր լույսը. բացի այդ, գծի մոտ կանգնած է կարմիր դրոշակներով պահակը։ Կարմիր գույնը մեքենավարին հայտնում է, որ ճանապարհը փակ է։

— Իսկ ինչո՞ւ կարմիրը և ոչ թե մի ուրիշ գույն։

Խոսրիկը չկարողացավ պատասխանել։ Իսկ դուք, երեխաներ, կարո՞ղ եք։


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.։

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—41—83, 2—39—06։

ՎՖ 00850. Պատվեր 1550. Տպաքանակ 7000։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 7/I 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։ Գինը 2 ռ.

## ԿԱՐՈ՞Ղ ԵՍ ԿԱՐԴԱԼ

Հարցերի պատասխանը պետք է գրել թվից դեպի կենտրոն ընկած հատվածներում։

Պատասխանները ճիշտ գրելուց հետո շրջագծերից մեկում կըկարդացվի ողջույնի խոսք։

1. Տարվա եղանակ, 2. Հ. Թումանյանի պոեմներից. 3. Հայրենական պատերազմի հերոսուհի, 4. ճամբարային կարևոր հարմարանք. 5. հերոս «Սասունցի Դավիթ» էպոսից. 6. քաղաքացիական պատերազմի հերոս. 7. Վ. Միրաքյանի «Լալվարի որսը» պոեմի հերոսներից. 8. թերակղզի հյուսիսային Եվրոպայում. 9. մոլորակ. 10. գունավոր մետաղ, 11. անտառային հատապտուղ. 12. քաղաք, որտեղ գործել ու զոհվել է Հայրենական պատերազմի հերոս Կոստանդին Զասլոնովը. 13. մոլեկուլի բաղկացուցիչ մասը. 14. հերոս Գ. Սունդուկյանի «Էլի մեկ զոհ» պիեսից. 15. Ալ. Շիրվանզադեի վիպակներից մեկը. 16. Վերդիի օպերաներից, որը գրվել է Սուեզի ջրանցքի կապակցությամբ։

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ






## ՀԵՔԻԱԹ-ԽՆԴԻՐ

*Նապաստակը գազար ուտել էր ուզում և թաքուն բանջարանոց մտավ։*

*Հանում էր, բայց ոչ մի գազար չէր ուտում, վախենում էր շները վրա տան։*

*Որոշեց տուն տանել և այնտեղ անուշ անել։ Երբ արդեն բավական գազար էր հանել, ճամփա ընկավ դեպի տուն։ Ծանր բեռան տակ հազիվ էր քայլում, երբ նրա առաջը կտրեց մի բրդոտ արջ։*

*— Բռնեցի, չէ՞,— ասաց արջը, հիմա ես քեզ կուտեմ։*

*Նապաստակը լաց լինելով աղերսեց.*

*— Արջ քեռի, ինձ մի ուտի, քեզ գազար կտամ։*

*— Եթե շատ տաս, քեզ ձեռ չեմ տա,— շրթունքները լիզելով ասաց արջը։*

*— Ինչքան որ ունեմ կեսը քեզ լինի,— առաջարկեց նապաստակը։*

*— Կեսը քիչ է, ա՛յ շլդիկ, նայիր թե ես քեզանից ինչքան մեծ եմ, ինչպե՞ս կարելի է հավասար բաժանել։ Կեսից ավելին եմ ուզում։*

*Նապաստակը արջ քեռուն տվեց ամբողջ գազարի կեսը և կես գազար էլ ավել։*

*Բրդոտից նոր էր ազատվել, երբ նրա ճանապարհը կտրեց խորամանկ աղվեսը։*

*— Վերջապես բռնվեցիր,— ասաց աղվեսը,— ես քեզ վաղուց էի սպասում, վաղուց է նապաստակի միս չեմ կերել։*

*Վախից նապաստակը լաց եղավ։*

*— Մորաքույր աղվես, եթե ինձ բաց թողնես, ես քեզ գազար կտամ։*

*— Եթե շատ տաս, համաձայն եմ։*

*— Ինչքան որ ունեմ՝ կեսը քեզ լինի։*

*— Կեսն ի՞նչ անեմ,— ժժգոհեց աղվեսը, կեսից շատ տուր ինձ, չէ՞ որ դու ինձանից փոքր ես։*

*Նապաստակը չէր ուզում, բայց ինչ կարող էր անել։ Իր մոտ եղած գազարի կեսը տվեց աղվեսին, հետո էլ կես գազար ավելացրեց։*

*Աղվեսը բաց թողեց նրան, Նապաստակը շնչասպառ տուն հասավ, ընկավ թախտին և սկսեց հոնգուր-հոնգուր լաց լինել. նրա մոտ ընդամենը մեկ հատ գազար էր մնացել.*

*Իմացեք, թե քանի գազար ուներ նապաստակը, քանի հատ տվեց արջին, քանիսը՝ աղվեսին։*



Հր.



Բելոռուսիայի Գիտությունների ակադեմիայի շենքը



Մինսկի Կրասնոարմեյսկայա փողոցը



Բելոռուսական ռեսպուբլիկայի պավիլիոնը
Համամիութենական գյուղատնտեսական
ցուցահանդեսում